# Հայկական Տեսության Գիտական Հոդվածների Հրատարակման Ճակատագիրը Հայաստանում

**AJP**

Հայաստանի Գիտությունների Ակադեմիայի Ֆիզիկայի ամսագրում (AJP) տեղակայված մեր հոդվածները (նույն հոդվածը երկու անգամ)




Ինչպես տեսնում եք վերևի մեղադրանք-լուսանկարից, մենք առաջին անգամ մեր հոդվածը՝ «Միաչափ Գոյերի Հարաբերական Շարժման Տեսություն - Ազատ Շարժում», հանձնել ենք այդ ամսագրին 21 Դեկտեմբերի 2012թ.:
Երկու շաբաթ անցնելուց և ոչ մի պատասխան չստանալուց հետո մենք որոշեցինք նույն հոդվածը ուղարկել երկրորդ անգամ՝ 09 Հունվարի 2013թ.:
Մենք անհանգստացած էինք մեր հոդվածի տպագրման ճակատագրով և այդ պատճառով երկու անգամ դիմել ենք (էլեկտրոնային նամակով) ամսագրի խմբագրությանը.
առաջին անգամ՝ 14 Հունվարի 2013թ.
երկրորդ անգամ՝ 19 Փետրվարի 2013թ.
Բայց ձայն բարաբառո յանապատի:
Երեք ու կես ամիս անցնելուց հետո միայն մենք ստացանք պատասխան, որը կարելի է համարել հաստատումը այն փաստի որ Հայերենը չի համարվում գիտական լեզու:
Բայց միթե այդ պատասխանը ստանալու համար պետք էր սպասել այդքան երկար հարգելի խմբագիր:


Editor-in-Chief Professor **Vladimir Aroutiounian**
Academician of the National Academy of Sciences,
Yerevan State University (YSU), Republic of Armenia
phone/fax: +(37410) 555590
e-mail: kisahar@ysu.am, aroutiounv1@yahoo.com


Հայաստանի Գիտությունների Ակադեմիայի Ֆիզիկայի ամսագրի պատասխանը, որը հակասում է Հայաստանի Սահմանադրությանը




Հայաստանի Գիտությունների Ակադեմիայի ֆիզիկայի ամսագիրը մեզ պատասխանեց 03 Ապրիլի 2013թ., այսինքն մեր հոդվածը առաջին անգամ ուղարկելուց մոտ երեք ու կես ամիս հետո:
Ահա այդ հակասահմանադրական պատասխանը.
« *Item Return*
*Unfortunately your item Միաչափ Գոյերի Հարաբերական Շարժման Տեսություն - Ազատ Շարժում could not be accepted into Armenian Journal of Physics as-is.*
*Articles in English only can be accepted.*
*The item has been returned to your workspace. You may wish to edit your item, fix the problem, and redeposit.*»
Դե եկ վարդապետ ու մի խենթանա:
Եւ այդ անճարակների ամսագրի խմբագրությունը, միայն երեք ու կես ամսից հետո կարողացավ պարզել այն փաստ, որ մեր հոդվածը ոչ թե Անգլերեն է այլ՝ Հայերեն:
Այսպիսի «տիեզերական» արագությամբ մեր Հայկական գիտությունը ի՞նչ հորիզոններ կարող է նվաճել: Ողբամ այդ գրանտակեր անկարողներին, որոնք նստած են Հայաստանի գիտության ծերանոցում (ակադեմիայում) և ոչ միայն հոշոտում են Հայկական գիտությունը, այլ հենց դրա համար էլ ստանում են նաև ակադեմիական նպաստ պատերազմի մեջ գտնվող Հայաստանի գանձարանից:

# *Հրատարակման Համար Պայքարը Շարունակվում Է*

**AJP**

Մենք ուղարկեցինք մեր հոդվածի համառոտ տարբերակը Անգլերեն (միայն կարևոր արդյունքները, 4էջ) 20 Ապրիլի 2013թ.




Դեղին գույնը նշանակում է որ մեր հոդվածը 03 Ապրիլի 2013թ. վերջնականապես մերժել են, իսկ մանիշակագույնը նշանակում է որ մենք բարեհաջող 20 Ապրիլի 2013թ. գրանցել ենք մեր հիմնական 86 էջանոց Հայերեն հոդվածի միայն կարևոր արդյունքները Անգլերեն (4 էջ):




Վերևի մեղադրանք-նկարը մենք լուսանկարել ենք 22 Հուլիսի 2013թ., որտեղ դուք կարող եք տեսնել մեր յոթ ամսվա ապարդյուն պայքարի արդյունքը: Ընդորում մեր հոդվածը այդպես էլ երբեք չուղարկվեց գրախոսման: Հարց է առաջանում, արդյո՞ք Հայաստանը ունի Գիտության Նախարար: Եթե այո, այդ դեպքում նա տեղյակ է թե ի՞նչ է կատարվում մեր Ակադեմիայում:

Արդեն հույս կտրել էի Հայկական AJP ամսագրից ու չէի ստուգում և ահա դեկտեմբերի սկզբներին ես ստուգեցի և տեսա որ նրանք դավադրաբար մեր հոդվածը ջնջել են:




Մենք անմիջապես, 04 Դեկտեմբերի 2013թ., նորից գրանցեցինք մեր հոդվածը: Այնուհետև նորից ու նորից մենք գրանցեցինք 12 Դեկտեմբերի 2013թ., 22 Հունվարի 2014թ. և վերջապես 27 Ապրիլի 2014թ.: Ակադեմիայի տղաները ջնջում են՝ մենք նորից տեղադրում...




Վերևի մեղադրանք-նկարը մենք լուսանկարել ենք 17 Մայիսի 2014թ. և 20 Հունիսի 2014թ.: Փաստորեն մեր մեկ ու կես տարվա պայքարը՝ հրատարակվելու մեր Հայրենի ֆիզիկայի գիտական ամսագրում մնաց անպատասխան և մեր հոդվածը այդպես էլ երբեք չուղարկվեց գրախոսման: Եվրոպայի և ԱՄՆ-ի գիտական ամսագրերը մոտ երկու շաբաթում որոշում են՝ մերժել թե ընթացք տալ հոդվածին:

# Հրատարակման Համար Պայքարը Շարունակվում Է

AJP

Մենք կարողացանք պատրաստել նոր հոդված - «Armenian Theory of Special Relativity Illustrated» վերնագրով (Անգլերեն, 11 էջ) և նույնպես ուղարկեցինք հրատարակման 21 Սեպտեմբերի 2014թ.:




Մենք կարողացանք պատրաստել ևս մի նոր հոդված - «Symmetry in Armenian Theory of Special Relativity» վերնագրով (Անգլերեն, 17 էջ) և նույնպես ուղարկեցինք այն հրատարակման 24 Դեկտեմբերի 2014թ.



Հայաստանի Ակադեմիայի տղաները հոգնեցին ջնջելու անպտուղ գործողություններից և լրիվ մատնվեցին անգործունեության: Իսկ մինչ այդ մենք գրեցինք մի նոր հոդված ևս, որի մեղադրանք-նկարը կարող եք տեսնել աջ կողմում: Ընդ որում ցավալին այն է որ մեր առաջին հիմնարար Հայերեն հոդվածի (86 էջ) միայն արդյունքները Անգլերեն (4 էջ), որը արդեն երկու տարուց ավել է համառորեն հրաժարվում են տպագրել Հայաստանում, տպագրվեց ԱՄՆ-ի «Infinite Energy» ամսագրի 2014թ. Մայիսի համարում (Volume 20, Issue 115) 40-42 էջերում:

Մենք վերոնշյալ հոդվածը գրել էինք երկու լեզվով՝ Հայերեն և Անգլերեն, բայց քանի որ ինչպես արդեն տեղյակ եք Հայաստանի Ազգային Ակադեմիայի ֆիզիկայի ամսագիրը (AJP) Հայերեն լեզուն համարում է ոչ գիտական լեզու և արգելված է, այդ պատճառով մենք ուղարկեցինք հրատարակման Անգլերեն տարբերակը: Վերևի մեղադրանք-նկարը ես լուսանկարել եմ վերջերս՝ 19 Փետրվարի 2015թ.: Ինչպես տեսնում եք մեր երեք տարբեր հոդվածները խեղճուկրակ վիճակում շարված են, սպասելով իրենց ճակատագրին՝ լինել թե չլինել:




«Infinite Energy» ամսագրի շապիկը և 40-րդ էջը:



«Infinite Energy» ամսագրի 41-րդ և 42-րդ էջերը:

# *Հրատարակման Համար Պայքարը Շարունակվում Է*

**AJM**

Հայաստանի Գիտությունների Ակադեմիայի մաթեմատիկայի ամսագրում (AJM) տեղակայված մեր առաջին հոդվածը, 29 Ապրիլի 2013թ.




Նորից մոտ երկու ամիս հետո, 26 Ապրիլի 2014թ., մեր հոդվածը ջնջեցին նույն պատճառաբանությամբ: «The item has been returned to your workspace.»




Մոտ երկու ամիս հետո 19 Հունիսի 2013թ. մեր հոդվածը ջնջեցին հետևյալ պատճառաբանությամբ. «Unfortunately your item Armenian Theory of Special Relativity could not be accepted into Armenian Journal of Mathematics as-is. Your paper does not satisfy our conditions. It's more convenient to send it to some physical journal for example Armenian Journal of Physics. The item has been deleted.»: Հետաքրքիր է որ ֆիզիկոսները ասում են՝ մեր հոդվածը մաթեմատիկա է, իսկ մաթեմատիկոսներն ասում են՝ դա ֆիզիկա է:




Այդ մերժումից մոտ ութ ամիս հետո մեր այդ նույն հոդվածը նորից տեղադրեցինք 27 Փետրվարի 2014թ.:

Մենք մտածեցինք որ գուցե մեր այդ առաջին հոդվածը սրտներովը չէ և այդ պատճառով, անմիջապես, մենք տեղադրեցինք մեր նոր պատրաստված երկրորդ հոդվածը 10 Հուլիսի 2014թ.: Մոտ երեք ամիս հետո, 17 Հոկտեմբերի 2014թ., մեր այդ երկրորդ հոդվածը նույնպես ջնջեցին նույն պատճառաբանությամբ. «Unfortunately your item Armenian Theory of Special Relativity Illustrated could not be accepted..» Հայաստանի մաթեմատիկոս տղեքը մեր երկրորդ հոդվածն էլ չսիրեցին, մնում է փորձել մեկ անգամ ևս:




Մեր երկու հոդվածները՝ 17 Հոկտեմբերի 2014թ. և 26 Դեկտեմբերի 2014թ., դեռ սպասում են տպագրման: